Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 2 ՀՈՒՆՎԱՐ 1950




# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78:

---

# ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՄԱՐՏԱԿԱՆ ԽՆԴԻՐԸ

Սովետական ժողովուրդը խանդավառությամբ պատրաստվում է պետական իշխանության բարձրագույն օրգանի՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրություններին: Պետական-քաղաքական խոշորագույն նշանակություն ունեցող այդ կամպանիան սովետական մարդիկ նշանավորում են հոյակապ նվաճումներով: Արտադրական ձեռնարկություններում, կոլխոզներում, հիմնարկություններում և ամենուր ծավալելով սոցիալիստական մրցությունը, աշխատավորությունը հայրենասիրական մեծագույն սխրագործություններով է դիմավորում 1950 թվի մարտի 12-ի համաժողովրդական մեծ տոնը:

Ռեսպուբլիկայի հազարավոր ագիտատորներ ներկայումս ոգևորությամբ ձեռնամուխ են եղել ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստմանը՝ ժողովրդի լայն խավերին հետևողականորեն պարզա-

բանելով բոլշևիկների պարտիայի և սովետական պետության քաղաքականության կարևորագույն հարցերը։

Օրինակելի ագիտացիոն աշխատանք են կազմակերպել Նոր Բայազետի շրջանի Նորատուս գյուղի ագիտատորները, որոնք սիստեմատիկաբար լինում են ընտրողների մոտ, հանգամանորեն բացատրում նրանց «ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների կանոնադրությունը», սովետական քաղաքացիների իրավունքներն ու պարտականությունները, պարզաբանում ընտրությունների վերաբերյալ կոլխոզնիկների կողմից առաջադրվող հարցերը, կապելով այն իրենց կոլխոզի առջև դրված տնտեսական կոնկրետ խնդիրների հետ։ Ագիտկոլեկտիվի ղեկավար, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Շ. Կարապետյանը հաճախակի հրավիրում է ագիտկոլեկտիվի պարապմունք, հրահանգավորում ագիտատորներին։

Ագիտատորների առաջնահերթ խնդիրն է՝ աշխատավորությանը լայնորեն բացատրել աշխարհում ամենադեմոկրատական Կոնստիտուցիայի՝ Ստալինյան Կոնստիտուցիայի մեծ սկզբունքները, Սովետական Միության պետական և հասարակական կարգը, ցույց տալ սոցիալիստական հասարակարգի



ումն ու անպարտելիությունը, նրա անվիճելի գերազանցությունը կապիտալիստական ամեն մի հասարակակարգի նկատմամբ։

Բոլշևիկների պարտիան ներկայումս սովետական մարդկանց ջանքերն ուղղում է այնպիսի վիթխարի խնդիրների իրականացմանը, ինչպիսիք են՝ հետպատերազմյան ստալինյան հնգամյակի ժամկետից շուտ ավարտումը, բնության վերափոխման ստալինյան պլանի իրականացումը, անասնաբուծության եռամյա պլանի կատարումը, ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրայի բարձրացումը։

Ահա այս հսկայական խնդիրների կենսագործմանը պետք է ենթարկվի ագիտացիոն-մասսայական աշխատանքը ընտրությունների նախապատրաստման և անցկացման շրջանում։ Այս տեսակետից նպատակասլաց քաղաքական աշխատանք են տանում Երևանի Կիրովի և Ձերժինսկու անվան գործարանների, Ալավերդու Քիմիական գործարանի, Հոկտեմբերյանի շրջանի Բամբակաշատ գյուղի ագիտատորները։

Սակայն որոշ ագիտատորներ նեղացնում և աղքատացնում են քաղաքական ագիտացիայի բովանդակությունը, սահմանափակվում են սոսկ թերթերի ընթերցանու-

թյամբ, կամ լավագույն դեպքերում՝ չոր ու անկենդան զրույցներով։ Այդպես են աշխատում, օրինակ, Առևտրի մինիստրության, Կաբելի գործարանի, Կոտայքի շրջանի Հացավան գյուղի ագիտատորներից շատերը։

Նախընտրական կամպանիայի ընթացքում ագիտատորները պետք է բնակչությանը բացատրեն մեր երկրում սոցիալիստական հասարակակարգի կառուցման համաշխարհային պատմական նշանակությունը, մեր հաղթանակների ոգեշնչող և կազմակերպիչ Լենինի-Ստալինի պարտիայի դերը, սովետական հասարակակարգի բարոյական-քաղաքական միասնության և ՍՍՌՄ ժողովուրդների անխախտ բարեկամության նշանակությունը։ Խոսելով միջազգային իրադրության հարցերի շուրջը, ագիտատորը անպայմանորեն պետք է բացատրի սովետական կառավարության արտաքին քաղաքականության սկզբունքները, համոզիչ օրինակներով ցույց տա, որ սովետական պետությունն այսօր ամբողջ աշխարհի առջև հանդես է գալիս, որպես մի հզոր տերություն, որն արիաբար գլխավորում է ողջ ազատաբաղձ մարդկության պայքարը հանուն խաղաղության ու սոցիալիզմի, ընդդեմ նոր պատերազմի հրձիգների։

Ինչպես անցած ընտրությունների ընթաց-



քում, այնպես էլ այժմ քաղաքական-մասսայական աշխատանքի կենտրոնը հանդիսանում է ընտրական տեղամասը և առաջին հերթին ագիտպունկտը։ Ռեսպուբլիկայում արդեն գործում են հարյուրավոր ագիտպունկտեր, որոնք իրենց շուրջը համախմբելով ագիտկոլեկտիվները, սիստեմատիկ աշխատանք են տանում բնակչության մեջ։ Բայց բանն այն է, որ Թալինի, Վեդու, Ջանգիբասարի շրջանների պարտիական կազմակերպությունները մինչև այժմ չեն ավարտել ագիտպունկտերի կազմակերպումն ու կահավորումը։

Հարկավոր է օգտագործել ագիտացիոն-մասսայական աշխատանքի բազմազան ձևերն ու մեթոդները, ինչպիսիք են՝ զրույցը, ժողովներն ու միտինգները, թերթերի և առանձին հոդվածների ընթերցումը, անվանի մարդկանց հետ հանդիպումներ կազմակերպելը, պատի թերթերի հրատարակումը, ցուցահանդեսների կազմակերպումը, ռադիոհաղորդումների կոլեկտիվ ունկնդրումները, կինոնկարների ցուցադրումը և այլն։

Ստալինյան Կոնստիտուցիայով սահմանված է ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածուներ առաջադրելու լիիրավ դեմոկրատական կարգ։ Քաղաքական-մասսայական աշխատանքը առանձնահա-

*տուկ թափ ու ծավալ պետք է ստանա հօգուտ դեպուտատության թեկնածուի մղվող ագիտացիայի շրջանում։ Դրանից մեծ չափով կախված է ընտրությունների հաջող անցկացումը։*

*Ագիտատորները պետք է ընտրողներին ծանոթացնեն դեպուտատության թեկնածուի հասարակական-քաղաքական և աշխատանքային գործունեության հետ, բացատրեն ընթերցողներին, որ քվեարկելով կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին, նրանք կքվեարկեն հանուն բոլշևիկների պարտիայի քաղաքականության, հանուն սովետական պետության հետագա հզորացման։*

*ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները խոշորագույն երևույթ են մեր երկրի կյանքում։ Ագիտատորների պատվի գործն է՝ բոլշևիկյան ճշմարտացի խոսքը հասցնելով յուրաքանչյուր ընտրողի, ավելի ուժեղացնել պարտիայի կապերը ժողովրդի հետ, նպաստել սովետական մարդկանց քաղաքական և աշխատանքային հարաճուն խանդավառության բուռն վերելքին, կոմունիզմի կառուցման մեծ գործին։*





## ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԸ ԳԼԽԱՎՈՐՈՒՄ ԵՆ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԽԱՆԴԱՎԱՌՈՒԹՅՈՒՆԸ

*ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստության ասպարեզում մեր գործարանի ագիտկոլեկտիվը արդեն զգալի աշխատանք է կատարել։ Գործարանի պարտիական կազմակերպությունը, Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստությունն սկսելու հենց առաջին օրերին վերանայեց ագիտկոլեկտիվի կազմը, այն լրացրեց նոր, քաղաքականապես լավ պատրաստված ընկերներով։ Գործարանի ագիտկոլեկտիվը, որը բաղկացած է 33 ագիտատորներից, իր ուժերը դասավորեց այնպես, որ արտադրության բնագավառում աշխատողների մեջ ագիտացիոն աշխատանք տանելուն զուգընթաց կարողացավ այդ աշխատանքը կազմակերպել նաև իրենց ամրացված թաղամասերի ազգաբնակչության շրջանում։ Ագիտկոլեկտիվում ագիտատորներին ցուցում տրվեց, որ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների կանոնադրության և*

Ստալինյան Կոնստիտուցիայի մասսայականացումը պետք է զուգակցել, կապել գործարանի պլանի կատարման հարցի հետ, ոգեշնչել ու կազմակերպել բանվորների մեջ առաջացած արտադրական խանդավառությունը, ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը։

Գործարանի բանվոր-ծառայողների մեջ ի պատիվ Գերագույն Սովետի ընտրությունների ծավալված արտադրական խանդավառությունը գլխավորելու առաջին քայլն այն եղավ, որ պարտկազմակերպության կողմից հրավիրվեց աշխատողների ընդհանուր ժողով, ուր միահամուռ կերպով որոշում ընդունվեց՝ ի պատիվ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների, դազգահների թողարկման 1950 թվականի առաջին եռամսյակի պլանը կատարել մարտի 20-ին։ Եվ ահա գործարանի ագիտատորները ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների անցկացնելու վերաբերյալ իրենց ունեցած զրույցները հաջող կերպով կապում են գործարանի առօրյա աշխատանքի հետ, յուրաքանչյուր ցեխի, բրիգադայի, բանվորի անելիքների հետ։

Որպես օրինակ կարելի է բերել հավաքման ցեխի ագիտատոր Միշա Ալավերդյանի



անցկացրած զրույցներից մեկը։ Այդ զրույցը նա սկսեց այսպես.

— Ընկերներ, այսօր ես ձեզ հետ կխոսեմ մեր, սովետական քաղաքացիների պարտականությունների մասին, այն մասին, թե մեր երկրի հիմնական օրենքով՝ ՍՍՌՄ Կոնստիտուցիայով ի՞նչ պարտականություններ է դրվում յուրաքանչյուր սովետական քաղաքացու վրա։ Նախ ես ձեզ կկարդամ ՍՍՌՄ Կոնստիտուցիայի չորրորդ հոդվածը։ Ահա թե ինչ է ասված այդ հոդվածում. «ՍՍՌՄ-ի տնտեսական հիմքն են կազմում տնտեսության սոցիալիստական սիստեմը և արտադրության գործիքների ու միջոցների սոցիալիստական սեփականությունը, որոնք հաստատվել են տնտեսության կապիտալիստական սիստեմի լիկվիդացիայի, արտադրության գործիքների ու միջոցների մասնավոր սեփականության վերացման և մարդու կողմից մարդու շահագործումը ոչնչացնելու հետևանքով»։

Մանրամասն պարզաբանելով այդ հոդվածը, ագիտատոր Ալավերդյանն ասում է.

— Մեր երկրի տնտեսական այդ հզորության մի մասնիկն էլ հանդիսանում է մեր գործարանը։ Ուրեմն մեզանից յուրաքանչյուրի վրա հայրենիքը պարտականություն

է դնում լավ աշխատել, ոչ մի ջանք չխնայել մեր երկրի հզորացման համար։ Ահա թե ինչու մեր Կոնստիտուցիայի 131-րդ հոդվածում ասված է. «ՍՍՌՄ-ի յուրաքանչյուր քաղաքացի պարտավոր է պահպանել և ամրացնել հանրային, սոցիալիստական սեփականությունը, որպես սովետական կարգերի սրբազան և անձեռնմխելի հիմք, որպես հայրենիքի հարստության և հզորության աղբյուր, որպես բոլոր աշխատավորների ունևոր և կուլտուրական կյանքի աղբյուր»։

Իսկ ինչպե՞ս են մեր գործարանի աշխատողները կատարում իրենց այս պարտականությունը։ Առանց պարծենալու կարող ենք ասել, որ լավ, պատվով։ Ինչպես ձեզ հայտնի է, մեր գործարանը դեռ անցյալ տարի կատարեց ստալինյան իր նոր հնգամյա պլանը։ Բայց այս ամենը մեզ իրավունք չի տալիս հանգստանալու։ Ընկեր Ստալինը մեզ սովորեցնում է, որ սովետական մարդկանց հատուկ չէ հաջողություններով հանգստանալ։

Մեր գործարանը պարտավորություն է վերցրել, ի պատիվ Գերագույն Սովետի ընտրությունների, դազգահների թողարկման եռամսյա պլանը կատարել մարտի 20-ին։ Իսկ դուք գիտեք, որ այս տարվա մեր պլա-



նը շատ ավելի բարձր է անցյալ տարվա պլանից։ Դուք գիտեք նաև, որ այդ պարտավորության կատարման գործում վճռական նշանակություն ունի մեր ցեխի աշխատանքը։ Դազգահների հավաքման այդպիսի բարձր պլանի կատարման համար պետք է առանձնապես լա՛վ աշխատեն մեր ցեխի՝ դազգահների հիմնական հանգույցները հավաքող բանվորները։ Մեզ հետաքրքիր է լսել, թե ինչ կասեն այդ ընկերները։ Հապա, Ասոյան, ի՞նչ կասես,— դիմում է ագիտատորը մի երիտասարդ բանվորի։

— Ես երկու հանգույցի փոխարեն օրական կհավաքեմ երեքից-չորս հանգույց,— վստահ ասում է Սարգիս Ասոյանը։

— Այդ շատ լավ է, ուրեմն այդ հանգույցը ապահովված է։ Իսկ դո՞ւ, Հրաչիկ, այս տարի առաջին անգամ ես ընտրություններին մասնակցելու, ինչպե՞ս ես որոշել դիմավորել քո կյանքի այդ նշանավոր օրը։

— Ես մեկի փոխարեն օրական կհավաքեմ 4—5 հանգույց,— հուզված պատասխանում է երիտասարդ բանվոր Հրաչյա Թաբայանը։

Ապա իրենց խոսքն են ասում մյուս բանվորները։ Եվ այսպես հավաքման ցեխի բանվորները կոնկրետ կերպով լուծեցին

վերցրած պարտավորությունների կատարման հարցը։

Նման զրույցներ են կազմակերպել նաև ձուլման ցեխի ագիտատոր Հ. Աղամալյանը, 4-րդ ցեխի ագիտատոր Գ. Գևորգյանը և ուրիշներ։

Գործարանի ագիտկոլեկտիվի ագիտատորները արդեն մի քանի զրույցներ են ունեցել իրենց ամրացված թաղամասերի ընտրողների հետ, ուր մասսայականացնում են ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների կանոնադրությունը, պարզաբանում Ստալինյան Կոնստիտուցիայի հիմունքները։ Այդ ասպարեզում օրինակելի աշխատանք է կատարում ագիտատոր Մանյա Վարդանյանը, որը արդեն հինգերորդ տարին է, ինչ ժրաջան կերպով ագիտացիոն-մասսայական աշխատանք է տանում իրեն ամրացված թաղամասի տնային տնտեսուհիների շրջանում։

Յ. ԱՅԴԻՆՅԱՆ

Երևանի Ձերժինսկու անվան Դազգահաշինական գործարանի պարտբյուրոյի քարտուղար

—○—

## ԻՆՉ Է ՏՎԵԼ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՄԵԶ ԵՎ ՄԵՐ ԳՅՈՒՂԻՆ

Բերիայի շրջանի Շահումյանի անվան կոլխոզի ագիտատոր ԲԵՆԻԱՄԻՆ ԲԱՐՍԵՂՅԱՆԻ զրույցը.

Բերիայի շրջանի Շահումյանի անվան կոլխոզի ագիտատոր Բենիամին Բարսեղյանը ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստության սկսվելու օրվանից մի շարք զրույցներ է ունեցել իրեն ամրացված թաղամասի կոլխոզնիկների հետ։ Մասսայականացնելով ընտրությունների կանոնադրությունը, ՍՍՌՄ Կոնստիտուցիան, նա յուրաքանչյուր անգամ իր զրույցի նյութը կապում է իրենց կոլխոզի առօրյայի, նրա հեռանկարների, կոլխոզնիկների աշխատանքների հետ։ Իր զրույցներից մեկը ագիտատոր Բարսեղյանը նվիրեց «Ինչ է տվել սովետական իշխանությունը մեզ և մեր գյուղին» թեմային։ Այդ զրույցին նա նախապատրաստվեց շատ խնամքով, խոսեց առանձին կոլխոզնիկների

հետ, հավաքեց իրեն անհրաժեշտ տեղեկությունները։ Նա դիմեց կոլխոզի գյուղատնտեսին, խնդրելով ներկա գտնվել զրույցին և խոսել կոլխոզի հեռանկարների մասին։

Ստորև բերում ենք ագիտատոր Բարսեղյանի այդ զրույցը։

— Ընկերներ, ես ձեզ հետ այսօր պետք է խոսեմ այն մասին, թե ինչ է տվել սովետական իշխանությունը մեզ և մեր գյուղին, —իր զրույցն սկսեց ագիտատորը։ Դուք բոլորդ գիտեք, որ մեր ավանը, երիտասարդ է — 20 տարեկան։ Երբ 20 տարի առաջ մենք, ավանի առաջին բնակիչներս, եկանք այս սարալանջերում մեր տները կառուցելու, այստեղ կենդանության ոչ մի նշույլ չկար, միայն խոպան, պապակված հողեր էին ու քարակույտեր։ Իսկ այսօր նայեցեք, թե ինչ է դարձել այն։

Առաջին բարիքը, որ բաշխեց մեզ սովետական իշխանությունը, դա Զանգվի կենարար ջուրն էր, որ ձորից բարձրացվեց մեր սարալանջը։ Ապա մենք ստացանք Երևանի խմելու ընտիր ջուրը։ Պետությունը ոչ մի միջոց չէր խնայում՝ ոչ դրամ, ոչ մեքենաներ, ոչ շինանյութ— մեր ավանը, մեր տները կառուցելու, մեր հողերը մշակելու համար։ Մեզանից ո՞րը կկարողանար իր գե-



ղեցիկ տունը, որն այսօր կանգնած է սեփական պարտեզում, կառուցել, եթե չլիներ մեր հարազատ պետության օգնությունը։

Բայց մի՞թե մեր պետությունը մեզ համար միայն բնակարաններ է կառուցել։ Մեր ավանն այսօր ունի իր միջնակարգ դպրոցի գեղեցիկ շենքը, ուր սովորում են մեր երեխաները։ 48 ուսուցիչ և ուսուցչուհիներ ունի մեր դպրոցը։ Մեր ավանն ունի իր հիվանդանոցը, տրոպիկական կայանը և ծննդատունը։

Մենք, կոլխոզնիկներս, ապրում ենք ունևոր ու կուլտուրական կյանքով։ Մեր ավանում գործում են մշտական կինո, ունենք լավ կահավորված թատրոնի շենք, ուր իր ներկայացումներն է տալիս շրջանային պետական թատրոնը։ Մենք բոլորս այնքան ենք ընտելացել էլեկտրականությանը, ռադիոյին, որ մեր կյանքը չենք կարող պատկերացնել առանց այդ հրաշալիքների։ Դուք բոլորդ էլ համարյա թերթեր եք ստանում, օգտվում եք մեր կոլխոզի գրադարանից։

Իսկ թե ի՞նչ բարիքներ է տալիս մեզ կոլխոզը, ինչպես գնալով ավելի ու ավելի ունևոր են դառնում մեր կոլխոզնիկները, այդ նույնպես մեզանից յուրաքանչյուրն զգում է իր սեփական օրինակով։ Ես ձեզ

կրկնում միայն մեկ-երկու օրինակ։ Վերցնենք մեր կոլխոզնիկ Խաչիկ Հակոբյանին։ Նա ունի գեղեցիկ բնակարան, ընտիր կահ-կարասի։ Խաչիկն ավարտել է միջնակարգ դպրոց, տանը իր անձնական գրադարանն ունի, ստանում է թերթեր։ Խաչիկի ընտանիքը մեր կոլխոզի միջակ աշխօրեր վաստակող ընտանիքներից է, բայց նա անցյալ տարի այնքան դրամ ու մթերք ստացավ կոլխոզից, որ նրան լի ու լի հերիք կանի մինչև նոր բերքը։ Էլ չեմ հաշվում այն եկամուտը, որ նա ստացավ տնամերձ տնտեսությունից և իր անասուններից։

Կամ թե վերցնենք հայրենադարձ Հակոբ Մարջանյանի ընտանիքը։ Դուք բոլորդ տեսաք, թե նա իր ընտանիքի հետ ինչ վիճակի մեջ մեր կոլխոզը եկավ։ Անցել է ընդամենը չորս տարի և նա ապրում է մեր մյուս կոլխոզնիկների նման կուլտուրական և ունևոր կյանքով։

Այսպիսի օրինակներ որքան ուզեք կարելի է բերել, բայց այսքանն էլ բավական է։

— Ոչ, բավական չի, խնդրում եմ մի ձայն տաք,— տեղից վեր է կենում հայրենադարձ Ոսկան Մարդոյանը։

— Խնդրեմ, ընկեր Ոսկան, խոսեք,— ասում է ագիտատորը։



— Ընկեր Ֆարսեղյան, այսօրվա մեր զրուցության թեման է. ինչ է տվել մեզ սովետական իշխանությունը։ Այդ հարցին ես այսպես եմ պատասխանում. մենք ոչինչ չենք ունեցել, ո՛չ ապրելու իրավունք, ո՛չ հող, ո՛չ տուն և ո՛չ էլ մի որևէ բան, ամեն ինչ մեզ տվել են սովետական իշխանությունը և մեծ Ստալինը։ Ստալինը մեզ կյանք է տվել։ Ահա ես ձեզ օրինակ։ 49 տարեկան եմ և միայն հայրենիք գալուց հետո այս չորս տարիներին է, որ կյանք եմ տեսնում։ Իմ բաժինն է եղել երկրից երկիր թափառելը, ստրկահարությունը։ Մենք մարդկային ոչ մի իրավունք չունեինք, անգամ հայերեն խոսելու իրավունք։ Իսկա՞յժմ. դուք բոլորդ տեսնում եք իմ ընտանիքի կյանքը— գեղեցիկ տուն էլ ունեմ իր պարտեզով, լավ կահկարասի ունեմ, երեխաներս ձրի կրթություն են ստանում։ Ես ու կինս, որ մինչև հայրենիք գալը անգրագետ էինք, արդեն երեք տարի է ինչ սովորում ենք դպրոցում։ Էլ ի՞նչ կուզեիք որ ասեի։ Ես իմ 49 տարվա կյանքի ընթացքում առաջին անգամ տուն ունեմ և այդ շնորհիվ սովետական իշխանության։

Տարեց հողագործի խոսքերը խոր տպավորություն են թողնում քոլոի վրա։ Ապա





ագիտատորը ձայն է տալիս գյուղատնտես Հ. Մարտիրոսյանին։

— Այստեղ մենք խոսեցինք մեր կոլխոզի ձեռք բերած հաջողությունների մասին։ Մեր կոլխոզն ունի է՛լ ավելի փայլուն հեռանկարներ։ Այս տարի մենք կազմակերպելու ենք թռչնաբուծական, անասնաբուծական, խոզաբուծական և մեղվաբուծական ֆերմաներ։ Միայն այս տարի գցելու ենք 50 հեկտար նոր այգի։ Մեր բոլոր այգիներն էլ դարձնելու ենք օրինակելի։ Մեր հողերում պիտի աճեն միչուրինյան տեսակի բազմաթիվ ծառապտուղներ, խաղողի նոր տեսակներ։ Բոլոր հաշվումներով մեր կոլխոզի եկամուտները ամենամոտ ժամանակում կավելանան ևս մեկ միլիոնով։

Այպա ագիտատորը ամփոփում է զրույցը։



ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան դրեց իսկական ժողովրդական դեմոկրատիայի սկիզբը, դեմոկրատիա, որն ապահովում է պետական կառավարման գործում աշխատավորների լայն մասսաների ներգրավումը։ Մարդկության պատմության մեջ առաջին անգամ դեմոկրատիզմը դարձավ ամբողջ ժողովրդի շահերի արտահայտությունը։ Սովետական պետության զարգացման ուղին— դա դեմոկրատիայի անշեղ ու անընդհատ զարգացման ուղին է։ Այս ուղու վրա կարևորագույն նշանաձող է հանդիսանում Ստալինյան Կոնստիտուցիան։ Հաղթանակած սոցիալիզմի Կոնստիտուցիան ամրապնդեց սոցիալիստական դեմոկրատիան տնտեսության սոցիալիստական սիստեմի և արտադրության գործիքների ու միջոցների սոցիալիստական սեփականության հիմքի վրա, որը հանդիսանում է սովետական պետության տնտեսական հիմքը։

Սոցիալիզմի հաղթանակի պայմաններում դեմոկրատիան դարձավ դեմոկրատիա բոլորի համար, դեմոկրատիա սովետական ամբողջ ժողովրդի համար, որը բաղկացած է բանվորներից, գյուղացիներից և սովետական ինտելիգենցիայից։

ՍՍՌՄ Կոնստիտուցիայի նախագծի մասին տված զեկուցման մեջ ընկեր Ստալինը նշեց, որ «Նոր Կոնստիտուցիայի նախագծի դեմոկրատիզմը ոչ թե «սովորական» և «հանրաճանաչ» դեմոկրատիզմ է ընդհանրապես, այլ սոցիալիստական դեմոկրատիզմ»։

Ընկեր Ստալինի այս նշանավոր խոսքերում արտահայտված է սոցիալիստական դեմոկրատիզմի էությունը և նրա արմատական տարբերությունը բուրժուական դեմոկրատիզմից, որը իրականում արտահայտում է կապիտալի մի կույտ մագնատների տիրապետությունը աշխատավորների լայն մասսաների նկատմամբ։ «Կապիտալիզմի ժամանակ,—գրում էր Լենինը,—դեմոկրատիզմը սեղմված է, ճզմված, խուզված, այլանդակված՝ մասսաների վարձու ստրկության, կարիքի ու աղքատության ամբողջ իրադրությամբ»։

Այս կամ այն պետության ընտրական սիստեմը արտահայտում է տվյալ պետու-



թյան դասակարգային բնույթը։ Այն ցույց է տալիս, թե ժողովուրդը փաստական ինչպիսի՞ հնարավորություն ունի իր ցանկացած դեպուտատներին ազատորեն ընտրելու պետության ներկայացուցչական օրգաններում։

Սովետական ընտրական սիստեմը հենվում է սոցիալիստական դեմոկրատիզմի մեծ սկզբունքների վրա, որոնք օրենսդրական կարգով ամրապնդվել են Ստալինյան Կոնստիտուցիայում։ Ընտրությունները Սովետական Միությունում, ինչպես ասել է ընկեր Ստալինը, առավել ազատ և առավել դեմոկրատիկ ընտրություններն են համեմատած աշխարհիս որևէ այլ երկրի ընտրությունների հետ։ Սովետական ընտրական սիստեմի կարևորագույն առանձնահատկությունն այն է, որ նա հետևողականորեն ու մինչև վերջ անց է կացնում ընտրական իրավունքի մեջ դեմոկրատիզմի սկզբունքները—ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրություններ, գաղտնի քվեարկություն, թեկնածուների առաջադրման դեմոկրատական կարգ, դեպուտատների հետկանչման իրավունք։

Ընդհանուր ընտրությունների սկզբունքը սովետական ընտրական սիստեմում կենսագործված է առավելագույն հետևողականությամբ, առանց որևէ սահմանափակման։

Սովետական ընտրական սիստեմի ընդհանուր լինելը նշանակում է, որ 18 տարեկան հասած ՍՍՌՄ բոլոր քաղաքացիները իրավունք ունեն մասնակցելու աշխատավորների դեպուտատների բոլոր սովետների ընտրություններին՝ անկախ ռասայական ու ազգային պատկանելիությունից, սեռից, դավանանքից, կրթական ցենզից, նստակեցությունից, սոցիալական ծագումից, գույքային դրությունից և անցյալ գործունեությունից, բացառությամբ խելագարների և դատարանի կողմից ընտրական իրավունքներից զրկվածների։

Մի շարք բուրժուական երկրներ էլ իրենց կոնստիտուցիաներում ձևականորեն հռչակում են «ընդհանուր» ընտրական իրավունք, բայց ամեն տեսակ ուղղումների, վերապահումների և «մեկնաբանությունների» օգնությամբ փաստորեն աշխատավոր մասսաներին զրկում են ընտրություններին մասնակցելու հնարավորությունից։ Կ. Մարքսը, օրինակ, ֆրանսիական բուրժուական կոնստիտուցիայի առթիվ գրել է. «Կոնստիտուցիայի յուրաքանչյուր պարագրաֆ իր մեջ բովանդակում է իր սեփական հակադրությունը... ազատություն՝ ընդհանուր ֆրազով, ազատության վերացում՝ վերապահումների մեջ»։



«Ընդհանուր» ընտրական իրավունքը բուրժուական երկրներում սահմանում է այնպիսի տարիքային ցենզ, որը ընտրություններից հեռացնում է աշխատավորների զգալի մասին և սահմանափակում է բանվոր դասակարգի իրավունքները, որն իր տարիքային կազմով առավել երիտասարդ դասակարգն է։ Բուրժուական պետություններում ընտրություններին մասնակցելու համար տարիքային ցենզը սովորաբար սահմանվում է 21-ից 23 տարեկան, իսկ որոշ տեղերում էլ բարձրանում է մինչև 25 տարեկան (Ճապոնիա, Հոլլանդիա, Դանիա)։

Ընտրություններին մասնակցելու իրավունք ունենալը ընդունված է կոչել ակտիվ ընտրական իրավունք, իսկ ընտրվելու իրավունք ունենալը ընդունված է կոչել պասիվ իրավունք։

Բուրժուական երկրներում պասիվ ընտրական իրավունքի (ընտրվելու իրավունքի) համար տարիքային ցենզը սովորաբար սահմանվում է 25 տարեկան, որը որոշ պետություններում բարձրանում է մինչև 30 տարեկանի (ԱՄՆ, Թյուրքիա և այլն)։

Բուրժուական մի շարք երկրներում կանայք չեն օգտվում ընտրական իրավունքից (Շվեյցարիա, Իրան, Ճապոնիա, Եգիպտոս)։

Սովետական պետության մեջ կանայք ընտրական իրավունքից օգտվում են տղամարդկանց հետ հավասարապես։

Բուրժուական շատ պետություններում ընտրական իրավունքներից զրկված են զինվորական ծառայողները։ Այն երկրներում, որտեղ զինծառայողները մասնակցում են քվեարկությանը, նրանք համենայն դեպս զրկված են պասիվ ընտրական իրավունքից։

Ի հակադրություն դրա, ՍՍՌՄ Զինված Ուժերի շարքերում գտնվող քաղաքացիները օգտվում են ընտրական իրավունքից ՍՍՌՄ բոլոր քաղաքացիների հետ հավասարապես։

Մի շարք երկրներում սահմանված է գույքային ցենզ։ Այսպես, Ամերիկայի մի քանի նահանգներում (Ալաբամա, Օրեգոն և այլն) քաղաքացիները պետք է տիրապետեն որոշակի ունեցվածքի, առանց որի նրանք չեն կարող լինել ընտրողներ, իսկ շատ նահանգներում էլ (օրինակ, Մասաչուզետս, Միսիսիպի և այլն) ընտրողը որոշակի գումարով պետք է հարկ վճարի, որպեսզի նրան թույլ տրվի մասնակցելու ընտրություններին։ ԱՄՆ-ի 18 նահանգներում գոյություն ունի կրթական ցենզ։ Զանազան ցեն-



զերի, ընտրողական հարկի և այլ սահմանափակումների հետևանքով ԱՄՆ-ում ընտրողների ցուցակների մեջ մտցվում է 21 տարեկանի հասած բոլոր նեգրերի միայն 10 տոկոսը, իսկ նրանցից քվեարկության մասնակցում է միայն մեկ տոկոսը։ Լենինը ասել է. «...Ոչ մի տեղ կապիտալի իշխանությունը, միլիարդատերերի կույտի իշխանությունը, ամբողջ հասարակության վրա չի արտահայտվում այնքան կոպիտ կերպով, այնպիսի բացահայտ կաշառքով, ինչպես Ամերիկայում»։

Գույքային ցենզի հետ միասին բուրժուական ընտրական սիստեմներում սահմանված է նստակեցության ցենզ, ըստ որի ընտրողը կարող է լինել միայն այն քաղաքացին, որը որոշակի ժամանակ բնակվում է տվյալ ընտրական օկրուգում։ Օրինակ՝ ակտիվ ընտրական իրավունքի համար Ամերիկայում պահանջվում է տվյալ վայրում երեք ամսից մինչև երկու տարվա բնակություն (նայած առանձին նահանգների օրենսդրության)։ Այսպիսով, մի ընտրական օկրուգից մյուսը տեղափոխվելը մարդկանց զրկում է ընտրական իրավունքից։ Հայտնի է, որ բնակավայրերի հաճախակի տեղափոխման դիմում են

ամենից շատ բանվորները, որոնք հարկադրված են աշխատանք որոնել։

Սովետական պետության մեջ չկա ոչ գույքային, ոչ կրթական և ոչ էլ նստակեցության ցենզ։ Մեզ մոտ ընտրական իրավունքից օգտվում են ՍՍՌՄ բոլոր քաղաքացիները, անկախ ռասայից ու ազգությունից։

Այսպիսով, ընդհանուր ընտրական իրավունքի սկզբունքը ամբողջ հետևողականությամբ և առանց որևէ սահմանափակման իրականացվում է միմիայն հաղթանակած սոցիալիզմի երկրում։

Սովետական ընտրական սիստեմի մյուս կարևորագույն սկզբունքը հավասար ընտրություններն են։ ՍՍՌՄ յուրաքանչյուր քաղաքացի ունի մեկ ձայն. բոլոր քաղաքացիները ընտրություններին մասնակցում են հավասար իրավունքներով։

Մի շարք բուրժուական երկրների ընտրական սիստեմներ հատուկ առավելություններ են սահմանում տիրապետող դասակարգերի համար։ Այսպես, օրինակ՝ Անգլիայում հավասար ընտրությունների խախտում է հանդիսանում բազմաքվեությունը, երբ ընտրողների առանձին կատեգորիաների տրվում է ոչ թե մեկ, այլ երկու ձայն։ Մի ընտրական օկրուգում բնակվող, իսկ մեկ այլ օկրուգում



արդյունաբերական, բանկային ու առևտրական ձեռնարկություններ ունեցող ընտրողները երկրորդ ձայնն են ստանում նաև երկրորդ օկրուգում։ Տիրապետող դասակարգերի համար գերակշռություն ապահովելու մյուս մեթոդը ընտրական օկրուգների այնպիսի կազմակերպումն է, որի ժամանակ ոչ մեծ բուրժուական շրջաններն ընտրում են նույնքան թվով դեպուտատներ, որքան և խոշոր բանվորական շրջանները։

Սովետական ընտրական սիստեմը կառուցված է հավասար ընտրական օկրուգների սկզբունքի վրա։ Միության Սովետի ընտրությունների գծով ՍՍՌՄ-ը բաժանվում է ընտրական օկրուգների՝ 300 հազար բնակչին մեկ ընտրական օկրուգ հաշվարկով։

Ազգությունների Սովետի ընտրությունների համար ընտրությունների հավասարության սկզբունքը արտահայտվում է նրանով, որ յուրաքանչյուր միութենական ռեսպուբլիկա բաժանվում է 25, յուրաքանչյուր ավտոնոմ ռեսպուբլիկա՝ 11, յուրաքանչյուր ավտոնոմ մարզ՝ 5 հավասար ընտրական օկրուգների։ Յուրաքանչյուր ազգային օկրուգ կազմում է մեկ ընտրական օկրուգ։

Այսպիսով, Ազգությունների Սովետի ընտրություններում ավտոնոմ ռեսպուբլիկաների,

ավտոնոմ մարզերի և ազգային օկրուգների ընտրողները քվե են տալիս և՛ որպես տվյալ ազգային միավորի ընտրողներ, և՛ որպես այն միութենական ռեսպուբլիկայի ընտրողներ, որի մեջ մտնում է ավտոնոմ ռեսպուբլիկան, ավտոնոմ մարզը կամ ազգային օկրուգը։ Դրա մեջ արտահայտվում է սովետական ընտրական սիստեմի իսկական դեմոկրատիզմը, որն ուղղված է յուրաքանչյուր ազգային միավորի շահերի ապահովմանը։

Սովետական ընտրական սիստեմի կարևորագույն սկզբունքներից մեկն էլ ուղղակի ընտրություններն են։

Ինչպես ասված է ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 139-րդ հոդվածում, «դեպուտատների ընտրությունններն ուղղակի են. աշխատավորների դեպուտատների բոլոր Սովետների ընտրությունները, սկսած աշխատավորների դեպուտատների գյուղական ու քաղաքային Սովետից մինչև ՍՍՌՄ-ի Գերագույն Սովետը, քաղաքացիները կատարում են անմիջականորեն, ուղղակի ընտրությունների միջոցով»։

Ուղղակի ընտրությունները առավել սերտ կապ են ապահովում ընտրողների և դեպուտատի միջև, բարձրացնում են վերջինիս պատասխանատվությունը ընտրողների առաջ և ռեալ հնարավորություն են ստեղծում, որ-



պեսզի ընտրողները հսկողություն սահմանեն իրենց ընտրած դեպուտատի գործունեության վրա։

Բուրժուական մի շարք երկրներում (Թյուրքիա, Իրան և այլն) մինչև օրս պահպանվել են պառլամենտի անուղղակի կամ երկաստիճան ընտրությունները։ ԱՄՆ-ում անուղղակի ընտրությունները կիրառվում են պրեզիդենտի ընտրությունների ժամանակ։ Անուղղակի ընտրությունները իրականացվում են հատուկ ընտրողների միջոցով, որոնք ընտրվում են նահանգի բնակչության կողմից և հավաքվում են պրեզիդենտի պոստի համար առաջադրված այս կամ այն թեկնածության օգտին քվեարկելու համար։

Սովետական ընտրական սիստեմի կարևոր սկզբունքներից մեկը գաղտնի քվեարկությունն է։ Այդ ընտրողների կամքի ազատ արտահայտության կարևոր երաշխիքն է։ Ինչո՞ւ է մեզ մոտ մտցված գաղտնի քվեարկությունը։ «Նրա համար,— ասում է ընկեր Ստալինը,— որ մենք ուզում ենք սովետական մարդկանց լիակատար ազատություն տալ քվեարկելու այն մարդկանց օգտին, ում որ նրանք ցանկանում են ընտրել, ում որ նրանք վստահում են իրենց շահերի ապահովումը»։

Գաղտնի քվեարկության անցնելը նշանակում է սոցիալիստական դեմոկրատիզմի հետագա աճումն ու ամրապնդումը, սովետական պետության ձգտումը՝ իր օրգանների աշխատանքը դնել բնակչության հսկողության տակ։ Խոսելով մեր ընտրական սիստեմի մասին, ընկեր Ստալինը այն համարում է մեր բոլոր հիմնարկների ու կազմակերպությունների աշխատանքի բարելավման լուրջ խթան։ «Համընդհանուր, հավասար, ուղղակի ու գաղտնի ընտրությունները ՍՍՌՄ-ում,— ասում է ընկեր Ստալինը,— մի խարազան են լինելու բնակչության ձեռքում՝ իշխանության վատ աշխատող օրգանների դեմ»։

Բուրժուական ընտրական օրենքի կողմից ձևականորեն հռչակված գաղտնի քվեարկությունը ամենևին էլ չի իրականացվում պրակտիկայում։ Գաղտնի քվեարկությունը չի կանխում ընտրությունների ժամանակ տնտեսական և վարչական ճնշումը, ընտրողներին կաշառելը, ձայների առևտուրը, ընտրողներին վարչության և արդյունաբերական ու կապիտալիստական այլ ձեռնարկատերերի կողմից սարսափեցնելը։

Սովետական ընտրական իրավունքի կարևորագույն սկզբունքը հանդիսանում է դե-



պուտատների թեկնածուների առաջադրման դեմոկրատական կարգը։

Ստալինյան Կոնստիտուցիան և նրա հիման վրա կազմված ընտրական օրենքը թեկնածուների առաջադրման իրավունքը վերապահում են հասարակական կազմակերպություններին և աշխատավորների ընկերություններին, կոմունիստական պարտիայի կազմակերպություններին, պրոֆեսիոնալ միություններին, կոոպերատիվ կազմակերպություններին, երիտասարդության կազմակերպություններին ու կուլտուրական ընկերություններին։

Սովետական Միությունում թեկնածուների առաջադրումը հանդիսանում է ամբողջ ժողովրդի հարազատ գործը։ Բանվորները, գյուղացիները, ծառայողները, զինվորական ծառայողները հնարավորություն ունեն ձեռնարկության, հիմնարկի, կոլխոզի կամ զորամասի ընդհանուր ժողովներում քննարկել ու առաջադրել ժողովրդի արժանավոր զավակների թեկնածությունները։ Այս կարգով առաջադրված թեկնածուները, տվյալ օկրուգում քվեարկվելու համար իրենց համաձայնությունը տալուց հետո, գրանցվում են համապատասխան օկրուգային ընտրական հանձնաժողովում։

Բոլոր գրանցված թեկնածուները պետք է
պարտադիր կարգով մտցվեն ընտրական
բյուլետենների մեջ։ Ընտրական օրենքը հա-
սարակական կազմակերպություններին և
ՍՍՌՄ քաղաքացիներին իրավունք է ապա-
հովում անարգել ագիտացիա մղել առաջա-
դրված ու գրանցված թեկնածուների օգտին.
ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 125-րդ հոդվածի
համաձայն։

Օրենքը պաշտպանում է առաջադրված թեկ-
նածուների օգտին կատարվող ագիտացիայի
ազատությունը խախտելու բոլոր փորձերը։
ՍՍՌՄ Գերագույն Սովետի անցյալ ընտրու-
թյունների ժամանակ կազմվեց կոմունիստ-
ների և անկուսակցականների բլոկ, որը ամ-
բողջ աշխարհին ցուցադրեց սովետական հա-
սարակության բարոյա-քաղաքական միաս-
նությունը և ՍՍՌՄ ժողովուրդների բարեկա-
մությունը։

Կոմունիստների և անկուսակցականների
ընտրական դաշինքը կայանում է նրանում,
որ կուսակցական կազմակերպությունները
չեն անջրպետվում անկուսակցականներից,
այլ նրանց հետ մեկտեղ առաջադրում են
դեպուտատության թեկնածուներին, միասին
աշխատավորների կոլեկտիվներից ներկա-
յացուցիչներ են առաջադրում ընտրական



հանձնաժողովներում, միասին ագիտացիա
են տանում բլոկի թեկնածուների օգտին։

Սովետական հասարակության բարոյա-
քաղաքական միասնության փայլուն ցու-
ցադրումը հանդիսացավ այն, որ ՍՍՌՄ Գե-
րագույն Սովետի անցյալ ընտրությունների
ժամանակ ամենուրեք անցան կոմունիստ-
ների և անկուսակցականների բլոկի թեկնա-
ծուները։ Կոմունիստների և անկուսակցա-
կանների բլոկի ամրությունը ապահովվում
է կոմունիստական պարտիայի ճիշտ քաղա-
քականությամբ և այն անսահման վստահու-
թյամբ, որ վայելում է պարտիան բոլոր
աշխատավորների կողմից։

Սովետական ընտրական սիստեմի կա-
րևորագույն սկզբունքներից է դեպուտատ-
ների հետկանչման իրավունքը։ ՍՍՌՄ Կոնս-
տիտուցիայի 142-րդ հոդվածը սահմանում
է, որ յուրաքանչյուր դեպուտատ պարտա-
վոր է հաշվետու լինել ընտրողների ա-
ռաջ իր աշխատանքի և աշխատավորների
դեպուտատների Սովետի աշխատանքի մա-
սին և կարող է ցանկացած դեպքում հետ
կանչվել ընտրողների մեծամասնության
որոշմամբ։

Սովետական ընտրությունների կազմա-
կերպման ամբողջ գործը ՍՍՌՄ յուրաքան-

յուր քաղաքացու համար ապահովում է իր ընտրական իրավունքները անարգել իրագործելու հնարավորություն: Այս նպատակով ընտրությունները նշանակվում են ոչ աշխատանքային օր, ընտրական տեղամասերը կազմակերպվում են բնակչության առավել մոտ վայրերում, ընտրությունների հետ կապված ծախսերը կատարվում են պետության հաշվին:

Սովետական ընտրական սիստեմը, որ հիմնված է Ստալինյան Կոնստիտուցիայի վրա, աշխարհում միակ դեմոկրատական ընտրական սիստեմն է, որը հետևողականորեն անց է կացնում ժողովրդի իսկական և անսահմանափակ գերիշխանության սկզբբունքը: «Այդպիսի ազատ և իսկապես դեմոկրատիկ ընտրություններ,— ասում է ընկեր Ստալինը,— կարող էին առաջ գալ միայն սոցիալիստական կարգերի հաղթանակի հողի վրա, միայն այն բազայի վրա, որ մեզանում սոցիալիզմը ոչ թե պարզապես կառուցվում է, այլ արդեն մտել է կենցաղի մեջ, ժողովրդի ամենօրյա կենցաղի մեջ»:

Ա. ՆՍԱՅԱՆ

Իրավաբանական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր





# ՓԱՅԼՈՒՆ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ՀԱՆՐԱԳՈՒՄԱՐԸ

Հրապարակվել է ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական Վիճակագրական Վարչության հաղորդագրությունը ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1949 թվի պետական պլանի կատարման արդյունքների մասին, որտեղ ամենայն պայծառությամբ արտացոլված է մեր սովետական Հայրենիքի հզոր վերելքը, նրա հարաճուն զարգացումն ու բարգավաճումը, կենսունակությունն ու առավելությունը կապիտալիստական հասարակակարգի նկատմամբ:

Արդյունաբերության աշխատանքի հետագա բարելավման ասպարեզում պարտիայի կողմից ձեռք առնված միջոցների շնորհիվ բարձրացել է արտադրական կարողությունների օգտագործման մակարդակը, խնայողություն է ձեռք բերվել հումքի, վառելանյութի ու նյութերի ծախսման գործում և հայտնաբերված են ձեռնարկությունների ներքին րես-

ցույցին ռեզերվները։ Այդ ամենը հնարավորություն տվին կառավարությանը տարվա ընթացքում ավելացնելու 1949 թվի համար սկզբնապես սահմանված արդյունաբերական արտադրության պլանը։ Եվ այդ ավելացված պլանը կատարվել է 103 տոկոսով։ ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1949 թվին, 1948 թվի համեմատությամբ, աճել է 20 տոկոսով, իսկ նախապատերազմյան 1940 թվի համեմատությամբ 41 տոկոսով։ Հնգամյա պլանով նախատեսված էր, որ ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության արտադրանքի ծավալը 1950 թվին 48 տոկոսով պետք է գերազանցեր նախապատերազմյան 1940 թվի արտադրությանը, սակայն իրականում 1949 թվի չորրորդ եռամսյակում արդյունաբերության համախառն արտադրանքի ամսական միջին թողարկումը 1940 թվի մակարդակը գերազանցեց 53 տոկոսով։ Արդյունաբերական արտադրանքի արտադրության աճը, օրինակ, մի շարք կարևորագույն արտադրությունների գծով 1949 թվին, 1948 թվի համեմատությամբ, փոփոխվել է հետևյալ կերպ. չուգուն՝ 119 տոկոսով, պողպատ՝ 125, գլանվածք՝ 127, երկաթուղային ռելսեր՝ 180, երկաթե խողովակներ՝ 131, պղինձ՝ 120, ցինկ՝ 124,



ածուխ՝ 113, բենզին՝ 110, էլեկտրաէներգիա 118, մագիստրալային շոգեքարշեր՝ 115, մագիստրալային էլեկտրաքարշեր՝ 216, մագիստրալային ապրանքատար վագոններ՝ 147, տրոլեյբուսներ՝ 126, բեռնատար ավտոմեքենաներ՝ 130, ավտոբուսներ՝ 117, գնդակավոր առանցքակալներ՝ 128, էլեկտրամոտորներ— տարբեր ուժի՝ 134—137 տոկոսով, տրակտորներ՝ 155, հացահատիկային կոմբայններ՝ 201, ավտոդողեր՝ 139, թուղթ՝ 127, ցեմենտ՝ 126, ռադիոընդունիչներ՝ 165, բամբակեղեն գործվածքներ՝ 114, վուշեղեն, բըրդեղեն և մետաքսեղեն գործվածքներ՝ 119—128 տոկոսով, կոշկեղեն՝ 122—128 տոկոսով, երշիկեղեն՝ 143, շաքար՝ 123 տոկոսով և այլն։

Ինչպես 1948 թվի համեմատությամբ, այնպես էլ պլանային նորմաների համեմատությամբ իջել է հումքի, նյութերի, վառելանյութերի, էլեկտրաէներգիայի ծախսումը արտադրանքի յուրաքանչյուր միավորի համար։ 1949 թվին արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքը, համեմատելի գներով, 1948 թվի դիմաց իջել է 7,3 տոկոսով։ Մեծ հաջողություններ են ձեռք բերվել շրջանառու միջոցների ազատման գործում։ Աշխատան-

ջի արտադրողականությունը 1948 թվի հա-
մեմատությամբ աճել է 13 տոկոսով։
1949 թվի կարևորագույն արդյունքներից
մեկն էլ այն է, որ լուրջ հաջողություններ են
ձեռք բերվել նոր տեխնիկայի զարգացման ու
արմատավորման գործում։ Ժողովրդական
տնտեսության կարևորագույն ճյուղերի
տեխնիկական հետագա պրոգրեսն ապահո-
վելու, աշխատատար և ծանր աշխատանք-
ների մեքենայացման համար հայրենական
արդյունաբերությունն ստեղծել է և կազմա-
կերպել բարձր արտադրող մեքենաների ու
մեխանիզմների ավելի քան 300 կարևորա-
գույն նոր կոնստրուկցիաների սերիական ար-
տադրություն։ Օրինակ՝ ածխարդյունաբերու-
թյան առավել աշխատատար և ծանր աշխա-
տանքները մեքենայացնելու համար թողարկ-
վել են ածխի նոր կոմբայններ, կատարելա-
գործված գայլիկոնող և ածուխ կուտակող
մեքենաներ և քերող հզոր տրանսպորտյոր-
ներ։ Դազգահաշինական արդյունաբերու-
թյունը յուրացրել և թողարկել է մետաղա-
հատ, տաշող-մամլող մեքենաներ, թեթև
արդյունաբերության համար թողարկված են
ավելի կատարելագործված ավտոմատիկ
ջուլհակային դազգահներ և այլն։ Այս բոլորի
հետ միասին 1949 թվի ընթացքում շարու-



նակվել է նոր, բարձր արտադրողական-
տեխնոլոգիական պրոցեսների հետագա
արմատավորումը և զարգացումը, ինչպես և
կատարվել են մետալուրգիայի, քիմիայի աս-
պարեզում, էլեկտրակայաններում, մեքենա-
շինության, սննդի և թեթև արդյունաբերու-
թյան մեջ արտադրական պրոցեսներն է՛լ
ավելի ավտոմատացնելու աշխատանքները։
1949 թվին ավելացել է բանվորների և ինժե-
ներա-տեխնիկական աշխատողների գյուտա-
րարությունների ու ռացիոնալիզատորական
առաջարկությունների թիվը. արմատավոր-
ված գյուտարարությունների և ռացիոնալի-
զատորական առաջարկությունների քանակը,
միայն արդյունաբերական ձեռնարկություն-
ների գծով, կազմում է ավելի քան 450 հա-
զար։
Նշանակալից հաջողություններ են ձեռք
բերել կոլխոզները, սովխոզները, ՄՏ կա-
յանները և կոլխոզնիկները, կոլխոզնիկու-
հիները, գյուղատնտեսության աշխատող-
ները։ Գյուղատնտեսության համախառն ար-
տադրանքը ամբողջովին վերցրած 1949
թվին գերազանցեց նախապատերազմյան
1940 թվի մակարդակը։ Հացահատիկային
կուլտուրաների համախառն բերքը կազմել է
7 միլիարդ 600 միլիոն փութ, գերազանցել

է նախապատերազմյան 1940 թվի մակարդակը և համարյա հասել է հնգամյա պլանով 1950 թվի համար սահմանված չափին։ Բամբակի, վուշի, արևածաղկի և կարտոֆիլի համախառն բերքը նույնպես զգալիորեն գերազանցել է 1940 թվի բերքը։ Բոլոր կուլտուրաների ցանքերի տարածությունը, համեմատած 1948 թվի հետ, ավելացել է 6 միլիոն հեկտարով։ Կատարվել է 1950 թվի բերքի համար կատարված աշնանացան կուլտուրաների ցանքի պետական պլանը։ 1950 թվի բերքի համար կատարվել է 8 միլիոն 300 հազար հեկտար ավելի ցրտահերկ, քան 1949 թվի բերքի համար։ 1949 թվին գյուղատնտեսությունը ստացավ 3—4 անգամ ավելի տրակտորներ, ավտոմեքենաներ և գյուղատնտեսական մեքենաներ, քան նախապատերազմյան 1940 թվին։ Այսպես, օրինակ, գյուղատնտեսությունն ստացավ 150 հազար տրակտոր՝ հաշված 15 ուժանոց տրակտորներով, 29 հազար կոմբայն, որոնցից 12 հազարը ինքնագնաց, 64 հազար բեռնատար ավտոմեքենա և ավելի քան մեկ միլիոն 600 հազար կցվող գործիքներ և այլն։

ՄՏ կայանները 1949 թվին կոլխոզներում կատարել են 21 տոկոսով ավելի գյուղատնտեսական աշխատանքներ, քան 1948 թվին



և 19 տոկոսով ավելի, քան նախապատերազմյան 1940 թվին։ Կոլխոզային գյուղացիությունը և սովխոզների աշխատողները 1949 թվին մեծ ոգևորությամբ իրականացնում էին պարտիայի և կառավարության որոշումը՝ հանրային, կոլխոզային ու սովխոզային մթերատու անասնաբուծության զարգացման 1949—1951 թ. թ. եռամյա պլանի մասին։ Կազմակերպվեցին խոշոր եղջերավոր անասունների, ոչխարաբուծական, խոզաբուծական և թռչնաբուծական մոտ 120 հազար կոլխոզային նոր ֆերմաներ։ Կոլխոզներում հանրային անասունների գլխաքանակը նախնական տվյալներով 1949 թվին ավելացել է՝ խոշոր եղջերավոր անասուններինը՝ 21 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 27 տոկոսով, խոզերի գլխաքանակը՝ 78 տոկոսով, ոչխարներինն ու այծերինը՝ 19 տոկոսով և ձիերինը՝ 22 տոկոսով, թռչունների քանակը ավելացել է երկու անգամ։ ՍՍՌՄ Սովխոզների մինիստրության սովխոզներում անասունների գլխաքանակը 1949 թվին ավելացել է՝ խոշոր եղջերավոր անասուններինը՝ 13 տոկոսով, խոզերինը՝ 46 տոկոսով, ոչխարներինն ու այծերինը՝ 12 տոկոսով և ձիերինը՝ 13 տոկոսով։ 1949 թվին կոլխոզներում հանրային մթերատու անասունների

գլխաքանակը նախապատերազմյան 1940
թվի գլխաքանակից ավելի էր՝ խոշոր եղ-
ջերավոր անասուններինը 27 տոկոսով, ոչ-
խարներինը և այծերինը 44 տոկոսով, խո-
զերինը 16 տոկոսով։

Հաջողությամբ է կատարվում բնության
վերափոխման ստալինյան մեծ պլանը։ Կոլ-
խոզներն ու սովխոզները 1949 թվին գրեթե
երկու անգամ գերակատարել են անտա-
ռատնկումների պլանը։ Ընդամենը անտա-
ռատնկումներ են կատարված գրեթե 600 հա-
զար հեկտար տարածության վրա, նախա-
պատրաստվել է 800 հազար հեկտար ապա-
գա տնկումների համար։

Երկաթուղային տրանսպորտում բեռնա-
շրջանառությունը զգալի չափով գերազան-
ցեց նախապատերազմյան մակարդակը։ Եր-
կաթուղային տրանսպորտի բեռնաշրջանա-
ռությունը 1949 թվին, համեմատած 1948 թվի
հետ, ավելացել է 17 տոկոսով և զգալիորեն
գերազանցել է նախապատերազմյան 1940
թվի մակարդակը։

Հետպատերազմյան ստալինյան հնգամյա-
կի չորրորդ տարին բնութագրվում է կապի-
տալ շինարարության չտեսնված թափ ու ծա-
վալով։ 1948 թվի համեմատությամբ ժողո-
վրդական տնտեսության մեջ կապիտալ աշ-



խատանքների ծավալը աճել է 20 տոկոսով։ 1946—1949 թվականների ընթացքում կառուցվել, վերականգնվել և գործողության մեջ են դրվել 5.200 պետական արդյունաբերական ձեռնարկություն, չհաշված պետական ու կոոպերատիվ մանր ձեռնարկությունները։

Ժողովրդի նյութական բարեկեցության անշեղ բարձրացումը սովետական հասարակության զարգացման օրենքն է։ 1949 թվին շարունակվում էր սովետական առևտրի ծավալումը։ 1949 թվի ընթացքում բնակչությանը վաճառվել է (համեմատելի գներով) 20 տոկոսով ավելի ապրանք, քան 1948 թվին։ 1949 թվին բնակչությանը վաճառվել է ավելի շատ կենդանական և բուսական յուղ, շաքար, միս, ձուկ, մակարոնեղեն, բրդեղեն, մետաքսեղեն և բամբակեղեն գործվածքներ, կոշիկ և պարենային ու արդյունաբերական շատ այլ ապրանքներ, քան նախապատերազմյան 1940 թվին։

Մեր երկրի ժողովրդական տնտեսության մեջ բանվորների ու ծառայողների թիվն անընդհատ աճում է։ 1948 թվի համեմատությամբ այդ թիվը ավելացել է մեկ միլիոն 800 հազարով։

1949 թվին սովետական ժողովուրդը զգալի հաջողությունների հասավ սոցիալիստա-

կան կուլտուրայի բոլոր բնագավառներում։

Տարեվերջին տարրական, յոթնամյա և միջնակարգ դպրոցներում, տեխնիկումներում և այլ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորում էր ավելի քան 36 միլիոն մարդ, այսինքն գրեթե 2 միլիոն մարդ ավելի, քան 1948 թվին, ընդ որում տարրական, յոթնամյա և միջնակարգ դըպրոցներում սովորողների թիվը 1949 թվին գերազանցեց հնգամյա պլանի օրենքով այդ դպրոցների համար 1950 թվին նախատեսված սովորողների թիվը։

1949 թվին գործում էր 864 բարձրագույն ուսումնական հաստատություն։ Բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորողների թիվը, ներառյալ հեռակայողներին, հասավ 1 միլիոն 128 հազար մարդու, որը ուսանողների նախապատերազմյան թիվը գերազանցում է 316 հազարով։ Տեխնիկումներում և մյուս միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորողների թիվը, ներառյալ հեռակայողներին, կազմում է 1 միլիոն 308 հազար մարդ, որը նախապատերազմյան թվից 333 հազարով ավելի է։

Բարձրագույն ուսումնական հաստատություններն ու տեխնիկումները ավարտած և



ժողովրդական տնտեսության մեջ զբաղված մասնագետների ընդհանուր թիվը 1949 թվին, 1948 թվի համեմատությամբ, ավելացավ և 68 տոկոսով ավելի էր, քան նախապատերազմյան 1940 թվին։

1949 թվին գիտա-հետազոտական հիմնարկների քանակը, 1940 թվի համեմատությամբ, աճեց մեկ ու կես անգամ, իսկ նըրանցում գիտական աշխատողների թիվը գրեթե երկու անգամ։

1949 թվին կառուցվել և ընդլայնվել են 38 հազար մահճակալ ունեցող հիվանդանոցներ, ընդ որում զգալիորեն ավելացել է ծնող մայրերի համար հիվանդանոցներում և ծննդատներում մահճակալների թիվը։ 1949 թվին բժիշկների թիվը, 1948 թվի համեմատությամբ, ավելացավ 26 հազար մարդով։ Աճել է գյուղական բժշկական տեղամասերի և գյուղում բուժական-մանկաբարձական կետերի քանակը։

Տարեցտարի ավելանում է Սովետական Միության ազգային եկամուտը։ Համեմատելի գներով այդ եկամուտը 1949 թվին 17 տոկոսով գերազանցեց 1948 թվի ազգային եկամուտը և 36 տոկոսով՝ նախապատերազմյան 1940 թվի մակարդակը։

Մասսայական սպառման ապրանքների

գները երկու անգամ իջեցնելու շնորհիվ
բարձրացավ բանվորների ու ծառայողների
ռեալ աշխատավարձը և իջավ գյուղացիների
ծախսերը արդյունաբերական ապրանքներ
ձեռք բերելու ասպարեզում։ Բացի դրանից,
բնակչությունը 1949 թվին, ինչպես և նախորդ
տարիներին, ի հաշիվ պետության ստացավ
նպաստներ և բանվորների ու ծառայողների
սոցիալական ապահովագրության գծով
վճարվող գումարներ, կենսաթոշակներ, նը-
պաստներ բազմազավակ մայրերին և այլ
վճարումներ։ 1949 թվին բնակչությունը
ի հաշիվ պետության ստացավ ավելի քան
110 միլիարդ ռուբլի գումարով այդպիսի
վճարումներ ու արտոնություններ, այսինքն
գրեթե երեք անգամ ավելի, քան 1940 թվին։



Հրապարակվել է նաև Հայկական ՍՍՌ Վի-
ճակագրական Վարչության հաղորդագրու-
թյունը Հայկական ՍՍՌ ժողովրդական տըն-
տեսության վերականգնման ու զարգացման
1949 թվի պետական պլանի կատարման ար-
դյունքների մասին։

Հայկական ՍՍՌ արդյունաբերությունը և
գյուղատնտեսությունը հաջողությամբ կա-
տարեցին 1949 թվի պետական պլանը։ Ռես-



պուբլիկայի արդյունաբերական արտա-
դրանքն այդ տարում 115 տոկոսով գերա-
զանցել է 1940 թվի մակարդակը։ 1949 թվի
պլանը Հայկական ՍՍՌ ամբողջ արդյունա-
բերության համախառն արտադրանքի գծով
կատարված է 102 տոկոսով։ Ռեսպուբլիկայի
ամբողջ արդյունաբերության համախառն
արտադրանքը 1949 թվին, 1948 թվի համե-
մատությամբ, ավելացել է 31 տոկոսով։

Գյուղատնտեսական աշխատանքների մե-
քենայացման զգալի բարձրացումը և ագրո-
տեխնիկական միջոցառումների հաջող կի-
րառումը ապահովել են հացահատիկային
կուլտուրաների, բամբակի, ծխախոտի և
կարտոֆիլի բերքատվության հետագա աճը։
Ռեսպուբլիկայի ՄՏ կայանները տրակտո-
րային աշխատանքների պլանը 1949 թվին
կատարել են 113 տոկոսով, որը 23 տոկոսով
ավելի է 1948 թվից։

Հաջողությամբ են անցնում 1950 թվի գար-
նանացանի նախապատրաստական աշխա-
տանքները։ Ռեսպուբլիկայի կոլխոզները 21
հազար հեկտար ավելի ցրտահերկ են կա-
տարել, քան 1948 թվին։

1949 թվին շարունակվում էր աճել կապի-
տալ աշխատանքների ծավալը։ Կապիտա-

աշխատանքների 1949 թվի պլանը կատարվել է 102 տոկոսով, որը ամբողջովին վերցրած, 1948 թվի համեմատությամբ, կազմել է 142 տոկոս։

1949 թվին բնակելի տարածության շահագործումը, 1948 թվի համեմատությամբ, կազմել է 88 տոկոս։ Քաղաքներում և քաղաքատիպ բնակավայրերում բանվորներն ու ծառայողները պետությունից ստացված վարկերի հաշվին 43 տոկոսով ավելի տուն են կառուցել, քան 1948 թվին։

Մանրածախ ապրանքաշրջանառության ծավալումը 1949 թվին զգալի չափով գերազանցել է 1948 թվի մակարդակը։ 1948 թվի համեմատությամբ աճել է հացի, շաքարի, կենդանական յուղի, հրուշակեղենի, լվացքի օճառի, կահույքի վաճառքը և այլն։

1949 թվի ընթացքում շարունակվում էր պարենային և գյուղատնտեսական մթերքների գների սիստեմատիկ իջեցումը ռեսպուբլիկայի կոլխոզային շուկաներում։

—О—



# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## ՀԵՏՊԱՏԵՐԱԶՄՅԱՆ ՍՏԱԼԻՆՅԱՆ ՀՆԳԱՄՅԱԿԻ ՉՈՐՐՈՐԴ ՏԱՐՎԱ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ

1. Հետպատերազմյան հնգամյակի չորրորդ տարվա պլանների կատարումն ու գերակատարումը սոցիալիստական էկոնոմիկայի կենսական մեծ ուժի վառ ապացույցն է։

2. Սոցիալիստական արդյունաբերությունը անշեղ վերելքով ընթացող, բարձր զարգացած արդյունաբերություն է։

3. Սոցիալիստական գյուղատնտեսությունը ամենից առաջավոր, մեքենայացված, փայլուն հեռանկարներ ունեցող տնտեսությունն է աշխարհում։

4. Ժողովրդի նյութական բարեկեցության անշեղ բարձրացումը սոցիալիստական հասարակության զարգացման օրենքն է։

5. 1949 թվի արդյունքները ցուցադրում են տնտեսության սոցիալիստական սիստեմի մեծագույն առավելությունները կապիտալիստականի նկատմամբ։

6. Սովետական միլիոնավոր մարդկանց աշխատանքը մեծ և ստեղծարար, պատմության ճակատագիրը վճռող աշխատանք է։

7. Սոցիալիստական մրցության լայն ծավալումով ամրապնդենք և բազմապատկենք 1949 թվին ձեռք բերած նվաճումները։

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում 1946 թ. փետրվարի 9-ին:

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1949 թվի պետական պլանի կատարման արդյունքների մասին: ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը: *«Ս. Հ.», 19 հունվարի 1950 թ.։*

Մեր մեծ սովետական հայրենիքը նոր վերելքում: *«Պրավդայի» հունվարի 18-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1950 թ. հունվարի 19-ի համարում։*

Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1949 թվի պետական պլանի կատարման արդյունքների մասին: Հայկական ՍՍՌ վիճակագրական վարչության հաղորդագրությունը: *«Ս. Հ.», 24 հունվարի 1950 թ.։*



II

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՊԱՀՊԱՆՈՒՄՆ ՈՒ ԱՄՐԱՊՆԴՈՒՄԸ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՔԱՂԱՔԱՑՈՒ ՍՐԲԱԶԱՆ ՊԱՐՏԱԿԱՆՈՒԹՅՈՒՆՆ Է

*1. Հանրային, սոցիալիստական սեփականությունը սոցիալիստական հասարակակարգի հիմքն է, մեր երկրի հարստության և հզորության աղբյուրը, աշխատավորության ունևոր և կուլտուրական կյանքի աղբյուրը։*

*2. Յուրաքանչյուր սովետական քաղաքացու պարտքն է ամենօրյա հոգատարություն հանդես բերել սոցիալիստական սեփականության աճի և պահպանության նկատմամբ։*

*3. Մեր տնտեսության բոլոր տեղամասերում կազմակերպել նյութական արժեքների ճիշտ հաշվառում և խիստ հսկողություն նրանց օգտագործման նկատմամբ։*

*4. Ամենախիստ խնայողության ռեժիմ սահմանել հումքի և նյութեղենի ծախսման նկատմամբ, անհաշտ պայքար մղել շռայլումների, հանրային ունեցվածքի նկատմամբ անտարբեր վերաբերմունքի դեմ։*

*5. Ինչպես է մեր ձեռնարկության մեջ, կոլխոզում, սովխոզում, մեքենա-տրակտորային կայանում ապա-*

*...հովված հանրային, սոցիալիստական սեփականության պահպանումը և օգտագործումը:*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Առաջին հնգամյակի արդյունքները: *«Լենինիզմի հարցերը», 11-րդ հրատ., էջ 478—483:*

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կոնստիտուցիան (Հիմնական Օրենք), *4, 5, 131-րդ հոդվածները:*

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության հրամանագիրը: Պետական և հանրային գույքի հափշտակման համար քրեական պատասխանատվության մասին: *«Ս. Հ.», 5 հունիսի 1947 թ.:*

*Социалистическая собственность священна и неприкосновенна!* „Правда“, 5 сентября 1949 г., передовая.



# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.*



Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

